Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

ОБЯЗАТЕЛЬНЫЙ
ЭКЗЕМПЛЯР

№ 5 ՄԱՐՏ 1959

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, III հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—53—78։




# ԲՈԼՈ՛ՐՍ ԴԵՊԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Մարտի 15-ին Սովետական Հայաստանի քաղաքներում, գյուղերում և բանվորական ավաններում տեղի են ունենալու Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական Սովետների ընտրությունները։ Դա քաղաքական խոշոր իրադարձություն է մեր ռեսպուբլիկայի աշխատավորների կյանքում։*

*Այժմ երկիրը նախընտրական կամպանիայի եռուն օրեր է ապրում։ Ամենուրեք մեծ խանդավառությամբ ժողովուրդը Գերագույն և տեղական Սովետների դեպուտատության թեկնածուներ է առաջադրել իր ամենաարժանավոր զավակներին, որոնք իրենց ուժն ու կարողությունը ի սպաս են դրել մեր Հայրենիքի բարգավաճման գործին, ժողովրդի բարօրության և երջանկության գործին։ Դրանք այնպիսի մարդիկ են, որոնք անձնական օրինակ են ծառայում աշխատանքի և պայքարի մեջ, իրենց հետևից տանում են աշխատավորական լայն զանգվածներին։*


7509-Ա


5453-59

Առաջադրված դեպուտատության թեկնածուների թվում են՝ պարտիական ու սովետական աշխատողներ, բանվորներ ու ծառայողներ, գյուղատնտեսական ֆրոնտի աշխատողներ, գիտության, կուլտուրայի, արվեստի և այլ բնագավառի ճանաչված մարդիկ։

Նախընտրական կամպանիայի այս օրերին բնակչության մեջ քաղաքական, մասսայական-բացատրական լայն աշխատանք են ծավալել սկզբնական պարտիական կազմակերպությունները։ Նրանք ընտրական տեղամասերը ապահովել են քաղաքականապես պատրաստված և ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձ ունեցող ագիտատորներով, որոնք մասսայական-բացատրական լայն աշխատանք են կատարում ընտրողների մեջ։ Ագիտատորները ընտրողներին ծանոթացնում են դեպուտատության թեկնածուների կյանքին ու գործունեությանը, զրույցներ կազմակերպում Սովետական Կոնստիտուցիայի ու ընտրությունների կանոնադրությունների առանձին հարցերի շուրջը, բացատրում ու մասսայականացնում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համա-



գումարի պատմական որոշումները։ Ընտրական տեղամասերում ստեղծված ագիտկետերը, որոնք ըստ էության հանդիսանում են քաղաքական աշխատանքի օջախներ, լայն կամպանիա են տանում առաջադրված դեպուտատության թեկնածուների օգտին, ընտրողներին կոչ է արվում առաջիկա ընտրությունները կազմակերպված դիմավորելու և անցկացնելու համար։

Ի պատիվ ընտրությունների օրվա ամենուրեք՝ գործարաններում ու ֆաբրիկաներում, հանքերում և երկաթուղային տրանսպորտում, կոլտնտեսային աշխատավորության մոտ արտադրական խանդավառության նոր ալիք է բարձրացել։ Հազարավոր բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ մտնելով համաժողովրդական մրցության մեջ պարտավորություններ են ստանձնում ընտրությունները արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու համար։ Զանգեզուրի հանքվարչության լեռնագործները պարտավորվել են յոթնամյակի առաջին տարվա համախառն արտադրանքի պլանը կատարել ժամկետից շուտ և որակական բարձր ցուցանիշներով, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, խնայել մեծ քանակությամբ պայթուցիկ նյութ, շինափայտ,

էլեկտրաէներգիա և խտացրած օդ։ Սոցիալիստական աշխատանքի հիանալի օրինակներ են ցույց տալիս անվանի հորատող ընկ. Ա. Մելիքյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարող հանքագործները։ Նրանք սոցիալիստական մրցության ամեն մի օր նշանավորում են արտադրական նորանոր հաջողություններով, որոնցից յուրաքանչյուրն իր արտադրական նորման կատարում է 175—180 տոկոսով։

Սոցիալիստական մրցությունը լայն ծավալ է ստացել Երևանի պահածոների գործարանում։ Առաջավոր բանվորները հաշվի առնելով եղած ռեզերվներն ու հնարավորությունները, պարտավորվել են յոթնամյակի առաջին տարվա առաջին եռամսյակի արտադրական առաջադրանքները կատարել ժամկետից շուտ՝ մարտի 15-ին։ Գործարանը հունվար ամսվա պլանը կատարել է մոտ 134 տոկոսով, պլանից ավել երկրին տալով 500 հազար ռուբլու արտադրանք։ Գերակատարված է նաև փետրվար ամսվա պլանը։ Հաջողությամբ առաջ է գնում նաև մարտ ամսվա պլանների կատարումը։ Ի պատիվ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների, կանգնելով աշխատանքային հեր-



թափոխի, շատ բանվորներ օրական մեկուկեսից—երկու արտադրական նորմա են կատարում։ Արտադրական ու քաղաքական նույնպիսի բուռն խանդավառություն է տիրում նաև ռեսպուբլիկայի մնացած արտադրական հիմնարկ-ձեռնարկություններում։

Աշխատանքային մեծ եռուզեռ է տիրում մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում։ Ոգեշնչված պարտիայի ու կառավարության որոշումներով, կոլտնտեսային աշխատավորները անում են ամեն բան, առաջիկա գարնանացանը կազմ ու պատրաստ դիմավորելու համար։ Արդեն ավարտվել են տրակտորների, շարքացանների և գյուղատնտեսական մյուս մեքենաների ու գործիքների վերանորոգումները, զտվում, կոնդիցիայի է հասցվում անհրաժեշտ սերմացուն։ Ելնելով ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներից գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները գործադրում են բոլոր ջանքերը սոցիալիստական դաշտերից այս տարի ավելի շատ արդյունք ստանալու՝ բարձրացնելու հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը, ընդարձակելու խաղողագործությունն ու այգեգործությունը, բարձրացնելու անասնաբուծության մթերատվությունը։ Նրանց քաջ հայտ-

նի է, որ ներկայումս գյուղատնտեսության բնագավառում յոթնամյակի գլխավոր խնդիրն է՝ հասնել արտադրության այնպիսի մակարդակի, որը հնարավորություն տա լիովին բավարարել պարենի ասպարեզում բնակչության և հումքի ասպարեզում արդյունաբերության պահանջմունքները և գյուղատնտեսական մթերքների ասպարեզում պետության մյուս կարիքները։

Ընկ. Ն. Ս. Խրուշչովը Մոսկվա քաղաքի Կալինինյան ընտրական օկրուգում իր ընտրողների հետ հանդիպման ժողովում արտասանած ճառում խոսելով միութենական ռեսպուբլիկաներում կատարվող առաջիկա ընտրությունների մասին նշեց՝

«Գերագույն Սովետների, ինչպես և աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները մեզ մոտ ժողովրդական տոնի են նմանվում։ Նախընտրական կամպանիաների ժամանակ հանրագումարի են բերվում Սովետների աշխատանքի արդյունքները, անցած ժամանակամիջոցում դեպուտատների աշխատանքի արդյունքները։ Եվ, ինչպես միշտ, մարդիկ աշխատում են այդպիսի տարեթվերը դիմավորել լավագույն նվաճումներով, դրանք նշանավորել աշխատանքային հաջողություններով»։



Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական Սովետների ընտրություններին քիչ օրեր են մնում։ Կազմակերպված գնալով դեպի այդ ընտրությունները հայ ժողովուրդը ևս մեկ անգամ փայլուն կերպով կցուցադրի իր կուռ միասնությունը, համախմբվածությունն ու նվիրվածությունը Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության նրկատմամբ, և իր պատրաստակամությունը յոթնամյա պլանի առաջադրանքները կատարելու ու գերակատարելու, կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրները իրագործելու ասպարեզում։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ բոլորս մեկ մարդու նման գնանք դեպի ընտրական տեղամասերը և մեր ձայնը տանք կոմունիստների ու անպարտիականների անհաղթելի բլոկի թեկնածուների օգտին, մեր Հայրենիքի հետագա բարգավաճման օգտին, սովետական ժողովրդի բարօրության օգտին։



# ՁԱՅՆ ՏԱՆՔ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՐԺԱՆԱՎՈՐ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻ ՕԳՏԻՆ

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները մեծագույն սիրով ու խանդավառությամբ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և տեղական Սովետների դեպուտատության թեկնածուներ են առաջադրել ժողովրդի լավագույն զավակներին ու դուստրերին։

Երևանի Կիրովի անվան գործարանի աշխատողները Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջադրել և գործարանային № 19 ընտրական օկրուգում գրանցել ՍՄԿՊ Կենտկոմի անդամ, ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Սուրեն Հակոբի Թովմասյանին։ Գործարանի բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, ծառայողները իրենց նախընտրական ժողովում միաբերան նշեցին, որ իրենք շատ բարձր են գնահատում ընկ. Թովմասյանի աշխատանքը, որ նրան ճանաչում են որպես տոկուն կոմունիստի, հայ ժողովրդի հավատարիմ զավակի, որը ուժ ու եռանդ չի խնայում մեր ռես-



պուբլիկայի հետագա բարգավաճման համար։ Հայաստանը խոշոր հաջողությունների է հասել արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության և կուլտուրայի զարգացման գործում։ Մեր ռեսպուբլիկան պարգևատրված է Լենինի շքանշանով։

Ընկ. Թովմասյանը աճել և դաստիարակվել է Կոմունիստական պարտիայի շարքերում։ Նա իր բոլոր ուժերն ու ընդունակությունները նվիրել և նվիրում է Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության դիրեկտիվներն անշեղորեն կատարելու գործին։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրվել և Լենինականի Ստալինյան № 93 ընտրական օկրուգում գրանցվել ՀԿՊ Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Հրաչ Խաչատուրի Մարգարյանը։ Երկար տարիներ նա պարտիական ղեկավար աշխատանք է կատարել ՀԿՊ Կենտկոմում և աչքի ընկել անխոնջ ու անբասիր աշխատանքով։ Նա բազմիցս արժանացել է ժողովրդի վստահությանը՝ ընտրվելով Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ և միշտ էլ արդարացրել ընտրողների հույսերը։

Կոմունիստների և անպարտականների

անխախտ բլոկի արժանավոր թեկնածու է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ Շմավոն Մինասի Առուշանյանը։ Ղափանի քաղաքային № 240 ընտրական օկրուգի աշխատավորների ներկայացուցիչների նախընտրական խորհըրդակցությունը միահամուռ կերպով պաշտպանեց նրա թեկնածությունը Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ առաջադրելու մասին իրենց քաղաքի կոլեկտիվների որոշումները և խնդրեց օկրուգային ընտրական հանձնաժողովին գրանցել նրա թեկնածությունը։

Ընկ. Առուշանյանը աշխատավորների կողմից ցուցաբերված այդ բարձր վստահության ու սիրուն արժանացել է իր նվիրված ու ջանասեր աշխատանքով։ Ռեսպուբլիկայի աշխատավորները նրան ճանաչում են որպես ուղղամիտ և սկզբունքային կոմունիստի։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների Մալիշկայի № 187 ընտրական օկրուգում (Եղեգնաձորի շրջան) քվեարկվելու համար առաջադրված է Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի նախագահ Անտոն Երվանդի Քոչինյանը։ Նա իր բազմամյա աշխատանքի ընթացքում վայելել ու այժմ էլ



վայելում է ընտրողների համակրանքը և ջանք չի խնայում պարտիայի կողմից առաջադրված խնդիրները պատվով կատարելու համար։ Նախընտրական ժողովում ընտրողները նշում էին, որ իրենք լավ գիտեն ընկ. Քոչինյանին։ Նա կապված է ընտրողների հետ և անձնվիրաբար ծառայում է ժողովրդին։

Կիրովականի № 114 ընտրական օկրուգում քվեարկվելու համար Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրված Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Նախագահի առաջին տեղակալ Յակով Նիկիտի Զարոբյանը։ Նա խոր ու բազմակողմանիորեն գիտի մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը և ուժ ու եռանդ չի խնայում ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման համար, ժողովրդին ավելի լավ ծառայելու և նրա բարձր վստահությունը լիովին արդարացնելու համար։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները իրենց նախընտրական ժողովներում պարտիական և սովետական ղեկավար աշխատողների հետ միասին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջադրել մեր ռեսպուբլիկայի

արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի անվանի մարդկանց, լավագույններից լավագույններին, որոնք իրենց ստեղծագործ ու անձնուրաց աշխատանքով բազմապատկում են մեր երկրի հարստությունը, բարձրացնում նրա փառքը, աշխատանքում անձնական օրինակով ոգևորում հազարավոր մարդկանց։

Երևանի Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը Կաշվեգործների № 31 ընտրական օկրուգում քվեարկվելու համար Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրել ապարատավարների բրիգադավար Սարգիս Վահանի Հակոբյանին։ Նա ավելի քան 20 տարի աշխատում է նույն գործարանում և միշտ էլ աչքի է ընկել իր լավ աշխատանքով։

Երևանի Պոլիտեխնիկական № 33 ընտրական օկրուգում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու է գրանցված նշանավոր գիտնական Սերգեյ Նիկիտի Մերգելյանը։ Մեծ են նրա ծառայությունները սովետական առաջավոր գիտության, հատկապես ճշգրիտ գիտությունների զարգացման ասպարեզում։ Այժմ նա խոշոր աշխատանք է կատարում մաթեմատիկա-



կան հաշվիչ նոր մեքենաներ ստեղծելու բնագավառում։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների Այգեձորի № 60 ընտրական օկրուգում Երևանի էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների գործարանի կոլեկտիվը դեպուտատության թեկնածու է առաջադրել Սաթիկ Ահարոնի Մուրադյանին, որն իր լավ աշխատանքով նվաճել է գործարանի բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների սերն ու համակրանքը։

Երևանի Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնի և Հայաստանի պետական ֆիլհարմոնիայի կոլեկտիվների կողմից Լերմոնտովի № 35 ընտրական օկրուգում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրված ՍՍՌՄ ժողովրդական արտիստ Գոհար Միքայելի Գասպարյանը, որը ջանասիրաբար ծառայում է սովետական արվեստի զարգացման համար։

Կոլտնտեսության № 76 ընտրական օկրուգում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրված Ստալինի անվան կոլտնտեսության անդամ, անվանի կթվորուհի, ՍՄԿԿ XXI համագումարի պատգամավոր Աշխեն Միքայելի Ա-

վետիսյանը։ Նա կոլտնտեսային աշխա-
տանքի աչքի ընկնող կազմակերպիչներից է,
անասունների խնամքը և նրանց մթերա-
տվությունը բարձրացնելու վարպետ։
Երևանի Ալյումինի գործարանի կոլեկտի-
վը Յուրմանովի № 67 ընտրական օկրուգում
Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպու-
տատության թեկնածու է առաջադրել էլեկ-
տրոլիզի ցեխի բրիգադիր Սարգիս Աբգարի
Ավագյանին։ Նա կոլեկտիվի կողմից սիր-
ված ու հարգված մասնագետ է, արտադրու-
թյան աչքի ընկնող առաջավոր։
Լենինականի շոգեքարշային դեպոյի կո-
լեկտիվը Հայկական ՍՍՌ Գերագույն Սովե-
տի ընտրությունների Սևյանի անվան № 91
օկրուգում քվեարկվելու համար առաջադրել
է լավագույն մեքենավար Հովհաննես Սե-
բոբի Սարուխանյանի թեկնածությունը։ Նրա
անձնական օրինակով բազմաթիվ երկաթու-
ղայիններ հասել են արտադրական բարձր
ցուցանիշների։

Կիրովականի Մյասնիկյանի № 108 ընտ-
րական օկրուգում Հայկական ՍՍՌ Գերա-
գույն Սովետի դեպուտատության թեկնածու
է առաջադրվել Քիմիական կոմբինատի կար-
բիտի ցեխի մեխանիկ Արտավազդ Աղասա-
րի Առաքելյանը։ Նա կոմբինատում մեծ աշ-



խատանք է կատարել արտադրության կա-
տարելագործման, սարքավորումներն ավելի
արդյունավետ օգտագործելու ուղղությամբ։
Ալավերդու № 122 ընտրական օկրուգում
քվեարկվելու համար Հայկական ՍՍՌ Գերա-
գույն Սովետի դեպուտատության թեկնածու
է առաջադրվել Պղնձաքիմիական կոմբինա-
տի հերթափոխության վարպետ Հայկ Վար-
շոյի Սոխակյանը։ Նա ավելի քան 11 տարի
աշխատում է կոմբինատում և միշտ էլ աչքի
է ընկել իր լավ աշխատանքով։
Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտ-
րությունների Աշտարակի № 147 ընտրական
օկրուգում դեպուտատության թեկնածու է
առաջադրվել ուսուցչուհի Անիկ Հմայակի
Ղուշչյանը։ Մանկավարժական կոլեկտիվը,
աշակերտներն ու ծնողները գովեստով են
խոսում նրա դաստիարակչական աշխատան-
քի մասին։ Նա ոչ միայն լավագույն մանկա-
վարժ է, այլև գյուղում հասարակական ակ-
տիվ աշխատող։

Ռեսպուբլիկայի աշխատավորները նույն-
պիսի սիրով ու խանդավառությամբ քաղա-
քային և շրջանային Սովետների դեպուտա-
տության թեկնածուներ են առաջադրել մեր
ռեսպուբլիկայի լավագույն մարդկանց, ո-
րոնք իրենց հիանալի գործերով նվաճել են

ժողովրդին ծառայելու վստահությունը։ Երևանի քաղաքային Սովետի դեպուտատության թեկնածուներ են առաջադրվել ատաղձագործ Գարսևան Համբարձումի Սիմոնյանը, մետաքսագործ բանվոր Պարգև Միհրանի Զուքասզյանը, ուսուցչուհի Նինա Մանուկի Հացագործյանը, շինարար բանվորուհի Մարիա Անդրեևնա Ջերնիշևան, պրոֆեսոր Արշավիր Մեսրոբի Շավարշյանը և շատ ուրիշներ։

Ուրախ ու երջանիկ օրեր են ապրում մեր ռեսպուբլիկայի աշխատավորները, նրանք իրավամբ հպարտանում են կոմունիստների և անպարտիականների անխախտ բլոկի իրենց թեկնածուներով և պատրաստ են մարտի 15-ին մեկ մարդու պես ձայն տալ նրանց օգտին։

Նախընտրական կամպանիայի այս եռուն օրերին մեծ և պատասխանատու խնդիր ունեն կատարելու մեր ագիտատորները։ Նրանք ընտրողների լայն շրջանում պետք է պարբերաբար ագիտացիա մղեն Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական Սովետների դեպուտատության թեկնածուների օգտին, հանգամանորեն պատմեն ունկնդիրներին այն անձնուրաց աշխատանքի մասին, որ կատարում են դեպուտատության թեկնածու-



ները ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում։

Այս օրերին դեպուտատության թեկնածուի օգտին սիստեմատիկաբար ագիտացիա մղելու հետ միասին հարկավոր է ունկնդիրներին պարզաբանել պարտիայի և կառավարության կողմից աշխատավորների առջև դրված խնդիրների, յոթնամյա պլանը բարձր ցուցանիշներով և ժամկետից շուտ կատարելու մասին։

Վերջերս իր ընտրողների հետ հանդիպում ունենալիս ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ վաղուց արդեն տրադիցիա է դարձել Սովետական պետության, միութենական ռեսպուբլիկաների գերագույն օրգանների, տեղական Սովետների ընտրությունների ժամանակ կոմունիստները և անպարտիականները համատեղ առաջադրում են ընդհանուր թեկնածուներ։ Այդ լավ, իրեն լիովին արդարացրած դեմոկրատական տրադիցիան միշտ հաղթանակ է բերել պարտիային և ժողովրդին։ Ամեն կասկածից վեր է, որ այն հաջողությամբ կպսակվի նաև առաջիկա ընտրություններում։

Ձայն տանք կոմունիստների և անպարտիականների անխախտ բլոկի թեկնածուների օգտին։

6453-



# ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԿԵՂԾ Է

Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ

Մեծ Լենինը խոսելով բուրժուական և պրոլետարական դեմոկրատիայի մասին, նշել է, որ բուրժուական դեմոկրատիան միշտ մնում է նեղ, թերատ, կեղծ, խաբեական, որ այն դրախտ է հարուստների համար, թակարդ և խաբեություն շահագործվողների, չքավորների համար։

Այո, բուրժուական դեմոկրատիան շահագործող փոքրամասնության դեմոկրատիա է շահագործվող մեծամասնության դեմ։

Բուրժուական հակաժողովրդական դեմոկրատիայի կլասիկ երկիրը ԱՄՆ-է, որտեղ ամենից շատ են ոտնահարվում մարդու իրավունքները։ Օրինակ, ԱՄՆ-ի կոնգրեսի 531 անդամների մեջ բանվորներ ու գյուղացիներ, այսինքն նյութական բարիքներ ստեղծողներ չկան, որոնց թիվը երկրում 65 միլիոնից ավելի է։ ԱՄՆ-ի կոնստիտուցիայում հռչակված ազատության և հավասարության մասին գեղեցիկ խոսքերի և իրականության մեջ



հսկայական անդունդ է ընկած։ Այդ կոնստիտուցիայում հռչակված «ընդհանուր» ընտրական իրավունքը, ամենուրեք խախտվում է բազմապիսի ցենզերի օգնությամբ։ Ցենզը դա պայման է, որին պետք է բավարարի ընտրողը՝ ընտրություններին մասնակցելու թույլտվություն ստանալու համար։

Բուրժուական երկրներում գործում են՝ ռասայական և ազգային պատկանելության, գրագիտության, կրթական, գույքային, նստակեցության, սեռի, տարիքի և այլ բազմաթիվ ցենզեր։ Ցենզերը զուտ դասակարգային բնույթ ունեն. դրանք ուղղված են աշխատավորների դեմ և ծառայում են բուրժուազիայի տիրապետության ամրապնդմանը։

Այսպես, ԱՄՆ-ի հարավային 4 նահանգներում գործում է գույքային ցենզը։ 8 նահանգում գանձվում է հատուկ ընտրական հարկ, որը գիտակցաբար կորզվում է տարվա սկզբին, չնայած ընտրություններն այնտեղ տեղի են ունենում նոյեմբերին։ Այսպիսով այդ ցենզով ծանր կացության մեջ է դրվում չքավոր բնակչությունը, հիմնականում նեգրերը։ Այդախո, Նյու-Մեկսիկո և մի քանի այլ նահանգներում գործող ռասայական և ազգային պատկանելության ցեն-

գի համաձայն ընտրություններին մասնակցելու իրավունքից զրկվում են հնդկական ճապոնական, չինական, մոնղոլական ծագում ունեցող ամերիկացիները։ ԱՄՆ-ի 29 նահանգներում զինվորները և նավաստիները զրկված են ընտրական իրավունքից, իսկ Հյուսիսային Կարոլինայի նահանգում ընտրություններին թույլ չեն տալիս մասնակցելու այն անձանց, որոնք աստծուն չեն հավատում։ Որպեսզի աշխատավորներին խանգարեն իրենց ներկայացուցիչներին սենատ անցկացնելու, մի շարք նահանգներում գործում է այսպես կոչված «օկրուգների սիստեմը»։ Ըստ այդ սիստեմի յուրաքանչյուր վարչական միավոր, անկախ այն բանից, թե այդ միավորը բնակչության թվով մեծ է թե փոքր, տալիս է մեկ դեպուտատ։ Օրինակ Տեխաս նահանգի Հյուստոն քաղաքը, որտեղ բնակվում է 800 հազարից ավելի մարդ, կոնգրեսում ունի նույնքան ներկայացուցչություն, ինչքան և նույն նահանգի 12 գյուղական օկրուգները, որոնցում բնակվում է 227 հազար մարդ։

Բուրժուական երկրների ընտրական պրակտիկայում շատ ժամանակ կատարվում են ընտրությունների արդյունքների բացահայտ կեղծարարություն։ Այսպես, օրինակ հայտ-



նի է դարձել, որ ԱՄՆ-ի նախկին պրեզիդենտ Տրումենին Սենատում ընտրելու համար, Միսուրի նահանգում դեմոկրատական պարտիայի լիդեր Պենտերգաստը 1934 և 1940 թվականներին դիմեց ստոր մեքենայության, նա ընտրական ցուցակներում մտցնում էր մեռածներին և ապա իր կողմնակիցներին ուղարկում էր նրանց փոխարեն քվեարկելու։

Ընտրական կամպանիաները բուրժուական երկրներում ուղեկցվում են աղմկարարությամբ։ Բուրժուական պարտիաների թեկնածուները իրենց մասսայականացնելու համար հաճախ դիմում են ամենաարտառոց միջոցների։ ԱՄՆ-ի ռեսպուբլիկական և դեմոկրատական պարտիաների թեկնածուներից ոմանք ընտրողներին դուր գալու համար իրենց ելույթները միտինգներում ուղեկցում են նվագով, կեղծ մորուքներ են կրում և այլն։

Դեմոկրատական պարտիայի կողմից Ալաբամա նահանգի նահանգապետի պաշտոնի համար առաջադրված թեկնածու Ֆոլսամը ընտրողների մոտ էր գնում ոտաբոբիկ, աղմկոտ նվագախմբի ուղեկցությամբ, նրանց համար երգում էր ժողովրդական երգեր՝ թափահարելով ավելն ու դույլը։

1948 թվականին ԱՄՆ-ի պրեզիդենտի ընտրությունների ժամանակ, ռեսպուբլիկական պարտիայի թեկնածու Դյուին Օրեգոն նահանգում այցելեց մի խումբ ցնդածների, որոնք հիմնադրել էին «քարանձավային մարդկանց ընկերություն» և նրանց հետ միասին հում միս կերավ։

Էժանագին ժողովրդականություն վայելելու համար արված այս խաղը ավարտվում է թեկնածուի ընտրվելուց անմիջապես հետո, որովհետև այդ պահից նա արդեն անկախ է ընտրողներից։

Ամերիկյան հայտնի հրապարակախոս Ֆրանց Կենտը, իր «Քաղաքական մեծ խաղը» գրքում վառ պատկերել է ԱՄՆ-ի պրեզիդենտի և կոնգրեսի թեկնածուների առաջադրման կոմեդիան. «Ընտրողները տեսնում են բուն ներկայացումը, այլ ոչ թե նրա փորձը։ Նրանք ոչինչ չգիտեն թեկնածուի առաջադրման իրական պատճառների մասին։ Նրանք որևէ բան իմանում են նրանից հետո, երբ բարձրանում է վարագույրը և նրանց առջև հանդես է գալիս ժպտացող թեկնածուն, որը նոտաների համաձայն խաղում է իր դերը օգտագործելով դեմագոգիական պրիոմների հավաքածուն»։

Ամերիկյան ընտրությունների «մակար-



դակին» ամենից շատ է մոտենում Արևմտյան Գերմանիան, որտեղ ընտրությունները նույնպես կատարվում են կաշառքի, կեղծիքի, ահաբեկման և այլ անազնիվ ճանապարհներով։ ԳՖՌ-ում 2 պալատներից միայն մեկն է ընտրովի՝ Բունդեստագը (ներքինը), իսկ Բունդեսրատը (վերինը) ստեղծվում է չինովնիկների հաշվին։ Բունդեստագի ներկա կազմում կան կոնցեռների 42 դիրեկտորներ, 41 կալվածատերեր, 34 խոշոր կապիտալիստներ, հիտլերյան նախկին չարագործներ և այլ ռեակցիոններներ։ Սակայն Բունդեստագում չկա ոչ մի կոմունիստ, քանի որ այնտեղ կոմպարտիան օրենքից դուրս է հայտարարված։

Բուրժուական պարտիաների թեկնածուները ընտրական կամպանիայի ժամանակ քծնում են ընտրողների առջև, երդվում են ժողովրդին և դեմոկրատական իդեալներին նվիրված լինելու մասին։ Նրանք պատրաստ են օգտագործել ամեն մի սենսացիա, որպեսզի ընտրողներին մոլորեցնեն, մի խոսքով ամեն միջոց գործադրում են իրենց օգտին ժողովրդից ձայներ կորզելու նպատակով։ Բուրժուական թեկնածուները միաժամանակ զանազան մեքենայություններ են

գործադրում, որպեսզի ընտրողների ուշադրությունը իրենց կողմը գրավեն։

Ամերիկյան իմպերիալիստները սիստեմատիկաբար միջամտում են ուրիշ երկրների ներքին գործերին, այդ թվում նաև նրանց ընտրական կամպանիաներին։ Այսպես 1957 թվականի սեպտեմբերի 15-ին Արևմտագերմանական Բունդեստագի ընտրությունների ժամանակ ամերիկյան կառավարությունը փաստորեն ինքն անցկացրեց ընտրական կամպանիան։ Ընտրությունների ընթացքում խախտվեց քվեարկության գաղտնիությունը, կատարվեցին բազմաթիվ մեքենայություններ, բաց թողնվեցին կեղծ բյուլետեններ և այլն։ Ընտրությունների օրը մոտենալու հետ միասին ավելի մեծ թափ էր ստանում նախընտրական տեռորը։ Օրինակ, օգոստոսի 22-ին Բրեմենում հարձակում կազմակերպվեց սոցիալ-դեմոկրատական կազմակերպության քարտուղար Խորստ Շտեկերի վրա, որը գազանաբար սպանվեց։ Լատերբախում գերմանական պրոֆաշիստական պարտիայի անդամները դաժանորեն ծեծեցին սոցիալ-դեմոկրատական ակտիվիստ Օտտո Շտիրին։

Բուրժուական կեղծ դեմոկրատիայի պայմաններում չի կարող գոյություն ունենալ



հավասար ընտրական իրավունք, քանի որ բանվորը երբեք չի կարող հավասարվել կապիտալիստին, իսկ գյուղացին՝ կալվածատերին։ Անգլիայում, օրինակ, հարուստ սեփականատերը ընտրությունների ժամանակ քվեարկում է 2 անգամ՝ մեկը իր բնակավայրում, մյուսը՝ այնտեղ, որտեղ գտնվում է նրա ձեռնարկությունը։

Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXI համագումարի ամբիոնից իրավացիորեն հայտարարեց, որ «իմպերիալիզմի գաղափարախոսները ճըգնում են գունազարդել հակաժողովրդական կապիտալիստական կարգերը։ Բուրժուական նշանավոր գործիչները համարյա իրենց յուրաքանչյուր ճառում պնդում են, թե Արևմուտքի կապիտալիստական երկրները «ազատ երկրներ են» իսկ կապիտալիստական աշխարհը «ազատ աշխարհ է»։

Այո, իսկապես կապիտալի երկրներում ազատություն կա, բայց ու՞մ համար։ Իհարկե, ոչ բանվորների համար... և ոչ գյուղացիների համար... և ոչ ինտելիգենցիայի համար... Կապիտալիստական երկրներում ազատություն գոյություն ունի միմիայն նըրանց համար, ովքեր ունեն փող, հետևաբար և իշխանություն»։

# ԱԳԻՏԿԵՏԸ ԱՅՍ ՕՐԵՐԻՆ

*Կ. ՀՈՒՆԱՆՅԱՆ*

*Երևանի Ալյումինի գործարանի բանվորական ավանի բնակիչները գովեստով են խոսում իրենց ագիտկետի մասին, որը գործում է Կուլտուրայի պալատում։*

*Ընտրական կամպանիայի այս եռուն օրերին ագիտկետում սիստեմատիկաբար քաղաքական և գիտական թեմաների շուրջ զրույցներ ու դասախոսություններ են կազմակերպվում ընտրողների համար, ագիտացիա մղվում դեպուտատության թեկնածուների օգտին։ Օրինակ, ագիտկետում ունկընդիրները լսել են զրույց ՍՄԿՊ XXI համագումարի արդյունքների, Սովետական Միության միջազգային հեղինակության բարձրացման, 26 կոմիսարների շրջանը յոթնամյակում և շատ ուրիշ թեմաների շուրջ։ Բացի դրանից, այստեղ կազմակերպվել է առաջին անգամ ընտրություններին մասնակցողների երեկո, որտեղ կարդացվել է սովետական քաղաքացու իրավունքների մասին դասախոսություն։*



*Ընտրողների ցանկությամբ ագիտկետում կազմակերպվել է նաև գեղարվեստական ինքնագործ խմբակի ելույթներ և կենդանի ամսագիր, ինչպես նաև էքսկուրսիաներ Երևանի տեսարժան վայրերը։*

*Որպեսզի ընտրողների հետ կատարվող զրույցները լինեն հետաքրքիր ու բովանդակալից, ագիտկետում հաճախակի լինում են ագիտատորների սեմինար պարապմունքներ։ Սեմինարում ագիտատորները փորձի փոխանակության կարգով պատմում են իրենց աշխատանքի մասին և լսում հրահանգչական զեկուցումներ։ Ագիտկետում կա «Օգնություն ագիտատորին» անկյուն, որը ագիտատորներին տրամադրում է անհրաժեշտ նյութեր, գրականություն, ինչպես նաև պլակատներ ու դիագրամաներ։*

*Ագիտկետին կից կազմակերպված է հինգ հոգուց բաղկացած զեկուցողների խմբակ, որտեղ ընդգրկված են ագիտացիոն աշխատանքի առավել փորձ ու պատրաստականություն ունեցող ընկերներ, որոնք ընտրողների համար անց են կացնում ժամանակակից թեմաներով հետաքրքիր զրույցներ։ Օրինակ, գործարանի գլխավոր ինժեների տեղակալ Սաֆարյանը օրերս զրույց ունեցավ ընտրողների հետ նախորդ ընտրու-*

թյուններից մինչև ներկա ընտրությունների ընկած ժամանակաշրջանում գործարանի ձեռք բերած հաջողությունների և նրա հետագա զարգացման հեռանկարների մասին։

Ագիտկետը լրիվ ապահովված է թարմ թերթերով և անհրաժեշտ գրականությամբ, ամեն օր ստացվում է 15 տեսակ թերթ և ամսագիր։ Այստեղ միշտ մարդաշատ է, հատկապես երեկոները։ Ընտրողները բացի զրույցներ ու դասախոսություններ լսելուց, կարող են օգտվել ագիտկետում դրված հեռուստացույցից, ռադիոընդունիչից և զանազան խաղերից։

Ագիտկետում կազմակերպված է ցուցահանդես՝ նվիրված ՍՄԿՊ XXI համագումարին, ՍՍՌՄ յոթնամյա պլանին և գործարանի ձեռք բերած հաջողություններին։ Այստեղ կա հարցերի համար հատուկ արկղ, որը բացվում է 5 օրը մեկ անգամ և հարց ու պատասխանի երեկոների միջոցով պատասխան տրվում ընտրողներին։

Աշխատավորության շրջանում մեծ հետաքրքրություն են առաջ բերում ղեկավար աշխատողների հանդիպումները։ Վերջերս գործարանի աշխատողները և բանավանի բնակչությունը հանդիպում են ունեցել Երևանի քաղաքային Սովետի Նախագահ Գ. Փահլե-



վանյանի, Ժողտնտխորհի նախագահ Ս. Մովսիսյանի, ՀԿՊ Երևանի քաղաքային Կոմիտեի առաջին քարտուղար Հ. Բաղդասարյանի, Ալյումինի գործարանի դիրեկտոր Հ. Դովլաթյանի և ուրիշների հետ։ Հետաքրքիր անցավ աշխատավորության հանդիպումը ՍՄԿՊ XXI համագումարի պատգամավոր, ՀՍՍՌ Մինիստրների Սովետի Նախագահ Ա. Քոչինյանի հետ։ Նա աշխատավորությանը մանրամասնորեն ծանոթացրեց ՍՄԿՊ XXI համագումարի արդյունքներին և պատմեց յոթնամյակում մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման հեռանկարների մասին։ Այժմ գործարանի պարտբյուրոյի և ագիտկետի ուշադրության կենտրոնում է գտնվում ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների մասսայականացումը։

Ագիտկետի լավ աշխատանքի արդյունքը կլինի այն, որ մարտի 15-ին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և տեղական Սովետների ընտրությունների օրը Ալյումինի գործարանի բանավանի բոլոր ընտրողները միահամուռ կերպով իրենց ձայնը կտան կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին։

# ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՆԸՆԴՀԱՏ ՎԵՐԵԼՔԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕՐԵՆՔՆ Է

(Թվեր և փաստեր)

*Մարդկության պատմության մեջ առաջին անգամ սոցիալիզմը պայմաններ է ապահովում հասարակության արտադրողական ուժերի արագ, անընդհատ վերելքի և նյութական ու հոգևոր բարիքների առատություն ստեղծելու համար։*

*Այն դեպքում, երբ կապիտալիզմի պայմաններում արտադրության աճը հանգեցնում է մի բուռ շահագործողների հարստացմանը և ուղեկցվում է աշխատավորների աղքատացմամբ, ապա սոցիալիզմի օրոք արտադրության աճը նպատակ ունի է՛լ ավելի լիովին բավարարել հասարակության բոլոր անդամների աճող նյութական ու կուլտուրական պահանջմունքները, հանգեցնում է ողջ ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքին։*

Սովետական հասարակության զարգացման օրենքը ժողովրդի բարեկեցության անշեղ աճն է՝ սոցիալիստական արտադրության զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա:



*Սովետական իշխանության տարիներին մեր երկրի ազգային եկամուտը բնակչության մեկ շնչի հաշվով ավելացել է 15 անգամ։ Այնինչ, 1913 թվականից մինչև 1957 թվականը ԱՄՆ-ի ազգային եկամուտը աճել է ընդամենը 1,8 անգամ, Անգլիայինն ու Ֆրանսիայինը 1,7 անգամ։*

*Յոթնամյակի ընթացքում ՍՍՌՄ ազգային եկամուտը կաճի 62—65 տոկոսով։*

*ՍՍՌՄ Կոնստիտուցիայում հռչակված է և իրականում ապահովված* բոլոր քաղաքացիների համար աշխատանքի իրավունք: *Մեր երկրում արդեն վաղուց և ընդմիշտ վերացված է մի այնպիսի սոցիալական չարիք, ինչպիսին է գործազրկությունը։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բուռն ու անընդհատ վերելքը շարունակ աճող պահանջ է ներկայացնում բանվորական ուժի նկատմամբ։ Երկրում տարեցտարի ավելանում է բանվորների և ծառայողների թիվը։* Սովետական Միությունում ներկայումս կա 54 միլիոն 600 հազար բանվոր ու ծառայող, այսինքն, 1913 թվականի համեմատությամբ՝ ավելի քան 4 անգամ:

*Կապիտալիզմի երկրներում յուրաքանչյուր աշխատավոր մշտապես երկարատև գործազրկության ենթարկվելու սարսափի տակ է՝ նրա բոլոր ծանր հետևանքներով հանդերձ։*

Ամերիկայի Միացյալ Նահանգներում *անցյալ տար-*

վեր դեկտեմբերին կար պաշտոնապես հաշվառված 4 միլիոն 108 հազար լրիվ գործազուրկ, այսինքն՝ 700 հազարով ավելի, քան 1957 թվականի դեկտեմբերին։ Վերջերս ամերիկյան սենատոր Դուգլասի բերած տվյալների համաձայն 1957 թվականի կեսերից մինչև 1958 թվականի կեսերն ընկած ժամանակաընթացքում ԱՄՆ-ում յուրաքանչյուր չորրորդ ընտանիքը տառապում էր գործազրկությունից։ Այդ ժամանակաընթացքում աշխատանքից զրկվել է 8,5 միլիոն բանվոր, իսկ շուրջ 4 միլիոն բանվոր ունեցել է ոչ լրիվ աշխատանքային շաբաթ և ստացել զգալիորեն պակաս աշխատավարձ։

Անգլիայում 1958 թվականի վերջերին նույնիսկ պաշտոնական վիճակագրությունը նշել է թվով մոտ 600 հազար գործազուրկ։ Իսկ մի շարք արհմիութենական և լեյբորիստական գործիչների հաշվումների համաձայն գործազուրկների փաստական թիվը մոտեցել է 1 միլիոն մարդու։ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում անցյալ տարվա վերջերին եղել է մոտ 1 միլիոն գործազուրկ։ Ճապոնիայում անցյալ տարվա առաջին ինն ամիսների ընթացքում միջին հաշվով գործազուրկների ամենամսյա թիվը կազմել է 590 հազար մարդ, այսինքն՝ 60 հազարով ավելի, քան 1957 թվականին։

✪ Սովետական պետությունը անդուլ կերպով հոգ է տանում բանվորների և ծառայողների աշխատանքի պայմանների բարելավման մասին:



ՍՍՌՄ յոթնամյա պլանի կոնտրոլ թվերը նախատեսում են, որ արդեն 1960 թվականին մեզ մոտ ավարտվելու է բանվորների և ծառայողների փոխադրումը յոթժամյա, իսկ ածխային և լեռնահանքային արդյունաբերության մի շարք առաջատար պրոֆեսիաների գծով վեցժամյա աշխատանքային օրվա։ 1962 թվականին իրականացվելու է բանվորների և ծառայողների փոխադրումը յոթժամյա աշխատանքային օրվանից 40-ժամյա աշխատանքային շաբաթվա։ Նախատեսվում է 1964 թվականից ստորերկրյա աշխատանքներում և աշխատանքի վնասակար պայմաններ ունեցող արտադրություններում գտնվող աշխատողներին կամաց-կամաց փոխադրել 30-ժամյա աշխատանքային շաբաթվա (6-ական ժամով 5 աշխատանքային օր, երկու կիրակիով), իսկ մնացած բոլոր աշխատողներին 35-ժամյա աշխատանքային շաբաթվա (7-ական ժամով 5 աշխատանքային օր, երկու կիրակիով)։ Կրճատ աշխատանքային օրվա անցնելը և շաբաթվա մեջ աշխատանքային օրերի պակասեցումը կատարվելու է առանց աշխատավարձի նվազեցման։ Այս միջոցառումների իրականացման շնորհիվ Սովետական Միությունը կունենա աշխարհում ամենակարճ աշխատանքային օրը և ամենակարճ աշխատանքային շաբաթը:

✪ ՍՍՌՄ-ում սիստեմատիկորեն բարձրանում են աշխատավորների ռեալ եկամուտները։ Յոթնամյա պլանի կոնտրոլ թվերը նախատեսում են, որ 1965 թվականին բանվորների և ծառայողների

*ռեալ եկամուտները (մեկ աշխատողի հաշվով) միջին հաշվով կաճեն 40 տոկոսով, իսկ կոլտնտեսականների ռեալ եկամուտները՝ ոչ պակաս, քան 40 տոկոսով։*

*Յոթնամյակում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կավարտվի բանվորների և ծառայողների աշխատավարձի կարգավորումը, որ սկսվել է վերջին տարիներս. դա կնշանակի* ցածր ու միջին վարձատրըվող բանվորների և ծառայողների աշխատավարձի բարձրացում և այսպիսով նրանց ու բարձր վարձատրվող աշխատավորների աշխատանքի վարձատրման միջև եղած տարբերության կրճատում։ *Աստիճանաբար, երկու էտապով, 1965 թվականին ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձը նախատեսված է 270—350 ռուբլուց բարձրացնել 500—600 ռուբլու։*

Կապիտալիզմի երկրներում ամեն տարի աճում է ճարկային բեռը, բարձրանում են լայն սպառման ապրանքների գները, կոմունալ ծառայության տարիֆները, ընկնում է ռեալ աշխատավարձը, իջնում աշխատավորների կենսամակարդակը։

ԱՄՆ-ում, *նույնիսկ պաշտոնական, խիստ իջեցված տվյալներով, կենսարժեքը անցյալ տարվա հոկտեմբերին 23,7 տոկոսով ավելի բարձր է եղել, քան միջին հաշվով 1947—1949 թվականներին։*

Չիլիում *1958 թվականի առաջին տասն ամիսների ընթացքում կենսարժեքը աճել է 27,3 տոկոսով։* Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում *1958 թվականի նոյեմբերին սննդամթերքների մանրածախ գները 19*



*տոկոսով ավելի բարձր են եղել, քան 1950 թվականին։* Ճապոնիայում, *ինչպես նշվում է կառավարության հրապարակած «Սպիտակ գրքում» 1958 թվականին եղել է 2 միլիոն 400 հազար քայքայված ընտանիք։ Այդ ընտանիքների անդամների թիվը կազմում է երկրի ողջ բնակչության շուրջ 13 տոկոսը։*

*Կապիտալիստական երկրներում սիստեմատիկաբար ընկնում են մանր և միջակ գյուղացիների եկամուտները, որը նրանց հասցնում է քայքայման։ ԱՄՆ-ում միայն 1950-ից մինչև 1957 թվականը քայքայվել է 792 հազար ֆերմերային տնտեսություն։ Վերջին տարիներս տասնյակ և հարյուր հազարավոր գյուղացիական տնտեսություններ քայքայվել են Արևմտյան Գերմանիայում, Իտալիայում, Ֆրանսիայում, Թուրքիայում և կապիտալիզմի այլ երկրներում։*

ՍՍՌՄ-ում վերջին հինգ տարիներին (1954—1958) սոցիալական ապահովագրության, ձրի ուսուցման, բժշկական սպասարկման գծով աշխատավորներին տրվող վճարումների և արտոնությունների, ինչպես նաև բազմազավակ ու միայնակ մայրերին տրվող պետական նպաստների ուղղությամբ պետության ծախսերը ավելացել են ավելի քան 60 տոկոսով։ Յոթնամյակի վերջում այդ նպատակների համար պետության հատկացումները կաճեն մոտավորապես մինչև 360 միլիարդ ռուբլու, 1958 թվականի 215 միլիարդի դիմաց։

*1956 թվականին ՍՍՌՄ-ում ընդունվեց* նոր օրենք պետական կենսաթոշակների *մասին, որը զգալիորեն բարելավեց բանվորների և ծառայողների կեն-*

սաթոշակային ապահովումը։ 1958 թվականին պետությունը վճարել է 64 միլիարդ ռուբլու կենսաթոշակ, այսինքն՝ գրեթե երկուս ու կես անգամ ավելի, քան 1953 թվականին։ 1958 թվականի սկզբներին մեր երկրում կենսաթոշակ ստացել են 17,9 միլիոն մարդ։

Յոթնամյա պլանով նախատեսվում է զգալիորեն ավելացնել կենսաթոշակների չափերը: Ծերության գծով տրվող կենսաթոշակների չափը, որն այժմ քաղաքներում ամսական կազմում է 300 ռուբլի, 1963 թվականին բարձրանալու է մինչև 400 ռուբլու, իսկ 1966 թվականին մինչև 450—500 ռուբլու։ Ընդսմին համապատասխանաբար կավելացվի մշտապես գյուղական վայրերում բնակվող կենսաթոշակառուների, ինչպես և հաշմանդամության պատճառով և կերակրողին կորցնելու դեպքում տրվող կենսաթոշակների նվազագույն չափը։

Կապիտալիզմի երկրներում կենսաթոշակների վճարման ծախսերը զգալիորեն ընկնում են հենց աշխատավորների ուսերին։ Այդպես, ԱՄՆ-ում բանվորներն ու ծառայողները իրենց աշխատավարձի $2\frac{1}{4}$ տոկոսը հատկացնում են կենսաթոշակային ֆոնդին, որը կազմում է ողջ կենսաթոշակային ֆոնդի կեսը։

✪ Սովետական Միությունում բնակչությանը ցույց տրվող բժշկական օգնությունը ձրի է: Տարեցտարի աշխատավորներին սպասարկում է ավելի մեծ թվով բժշկական անձնակազմ, աճում է հիվանդանոցների, պոլիկլինիկաների, դիսպանսերների և այլ բուժական-



պրոֆիլակտիկ հիմնարկների ցանցը։ Եթե մինչ ռևոլյուցիան մեր երկրում 10 հազար բնակչին ընկնում էր 13 հիվանդանոցային մահճակալ, ապա այժմ՝ 70։

Բժիշկներով ապահովված լինելու տեսակետից ՍՍՌՄ-ը առաջ է անցել զարգացած կապիտալիստական երկրներից։ 1957 թվականին ՍՍՌՄ-ում 10 հազար բնակչին ընկնում էր 17 բժիշկ, ԱՄՆ-ում՝ 14, Իտալիայում՝ 12, Ճապոնիայում՝ 10, Անգլիայում և Ֆրանսիայում՝ 9։ Սրան պետք է ավելացնել, որ կապիտալիզմի երկրներում բժշկական օգնությունը վճարովի է և հիվանդության դեպքում բժիշկ կանչելու ու բուժվելու վրա աշխատավորը պետք է ծախսի իր աշխատավարձի խոշոր մասը։

✪ Սովետական Միությունում աշխատավորներին է ծառայում սանատորիաների և հանգստյան տների լայն ցանց։ 1957 թվականին սանատորիաներում և հանգստյան տներում բուժվել ու հանգստացել է 5 միլիոն 600 հազար մարդ, որոնց ճնշող մեծամասնությունը ուղեգիր է ստացել ձրի կամ արտոնյալ գնով։ 1958 թվականի ամռանը 6,5 միլիոնից ավելի երեխաներ ու պատանիներ հանգստացել են պիոներական ճամբարներում, մանկական սանատորիաներում, էքսկուրսիոն-տուրիստական բազաներում կամ ամառվա ընթացքում մանկապարտեզների, մանկամսուրների և մանկատների հետ մեկնել են ամառանոցային վայրեր։

Նման բան չկա և չի կարող լինել կապիտալիստական երկրներում։

*Ժողովրդի բարեկեցության սիստեմատիկ բարելավման և առողջապահության զարգացման շնորհիվ ՍՍՌՄ-ում բնակչության ընդհանուր մահացությունը նախառևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ պակասել է 4 անգամ, իսկ երեխաների մահացությունը՝ 6 անգամ։ ՍՍՌՄ-ն բնակչության ավելի ցածր մահացություն և ավելի բարձր բնական աճ ունի, քան այնպիսի երկրներ, ինչպիսին ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան։*

Ընթացիկ յոթնամյակում նախատեսված է իրականացնել բնակչության առողջապահության հետագա ընդարձակ ծրագիր:

✪ *Վերջին տարիներս ՍՍՌՄ-ում խիստ կերպով աճագացել է* բնակարանային շինարարության *թափը։*

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը խնդիր են դրել՝ առաջիկա 10—12 տարում վերացնել բնակարանների պակասը:

*Յոթնամյա պլանը մեծ ավանդ է ներդնում այս պատմական խնդրի կատարման գործում։ 1959—65 թվականներին քաղաքներում, բանվորական ավաններում, ՆՏԿ-ներում և անտառարդյունտեսություններում կառուցվելու է 15 միլիոն բնակարան՝ 650—660 միլիոն քառ. մետր ընդհանուր տարածությամբ։ Սա 2,3 անգամ ավելի է, քան կառուցվել է նախորդ յոթնամյակում։ Խնդիր է դրվում բնակելի տարածությունը բաշխելիս իրականացնել անցումը ընտանիքին առանձին բնակարան տալուն։*



*Գյուղական վայրերում կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի ուժերով կկառուցվի շուրջ 7 միլիոն բնակելի տուն։*

*Կապիտալի երկրներում բնակարանային կարիքը կրում է ծայրահեղ սուր և խրոնիկ բնույթ։ Կապիտալիզմի ամենահարուստ երկրում՝ ԱՄՆ-ում, ըստ պաշտոնական տվյալների, ավելի քան 15 միլիոն ընտանիք ապրում է քաղաքի հետնախորշերում։ ԱՄՆ-ում բնակարանային վարձը ծայր աստիճան բարձր է. այն աշխատավորներից խլում է նրանց աշխատավարձի մինչև մեկ երրորդը։*

✪ Տանր արդյունաբերության աճի և գյուղատնտեսական արտադրության արագ վերելքի հիման վրա տարեցտարի ավելանում է ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը:

*1958 թվականին մեր երկիրը արտադրել է սպառման առարկաներ 14 անգամ ավելի, քան 1913 թվականին։* 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը նախատեսում են յոթնամյակի ընթացքում լիովին բավարարել կտորեղենի, հագուստի, կոշիկի և այլ ապրանքների նկատմամբ ժողովրդի ունեցած պահանջները:

Թեթև արդյունաբերության *համախառն արտադրանքը յոթնամյակի ընթացքում կաճի մոտ մեկուկես անգամ։ 1965 թվականին մեր երկիրը բոլոր տեսակի կտորեղեն բաց կթողնի 10,5 միլիարդ մետրից ավելի, այսինքն՝ մոտավորապես 1,4 անգամ ավելի, քան*

1958 թվականին։ Կաշվե կոշիկ կարտադրվի 515 միլիոն զույգ, որը 160 միլիոն զույգով կգերազանցի 1958 թվականի մակարդակը։

Կտորեղենի, կոշկեղենի և հագուստի արտադրման ընդհանուր ծավալով և այս ապրանքների մեկ շնչին ընկնող քանակով ՍՍՌՄ-ը կմոտենա ԱՄՆ-ին։

Զգալիորեն կավելանա կահույքի, կարի մեքենաների, սառնարանների, լվացքի մեքենաների, ռադիոընդունիչների, հեռուստացույցների, ժամացույցների, հեծանիվների, ֆոտոապարատների, կենցաղային էլեկտրական սարքերի արտադրությունը։

Յոթնամյակի ընթացքում խիստ կերպով կաճի սննդի արդյունաբերության մթերքների թողարկումը։ Մսի արտադրությունը կաճի գրեթե 2,2 անգամ։ Կաթի համախառն արտադրանքը կաճի 1,7—1,8 անգամ։ Սա նշանակում է, որ բնակչության մեկ շնչի համար մեզ մոտ կարտադրվի ավելի քան 450 կիլոգրամ կաթ, այսինքն՝ զգալիորեն ավելի, քան ԱՄՆ-ում։ Շաքարի արտադրանքը 1965 թվականին կհասցվի մինչև 9,25—10 միլիոն տոննայի։ Այլ կերպ ասած, յոթնամյակի վերջին տարում բնակչության մեկ շնչի հաշվով կարտադրվի 41—44 կիլոգրամ շաքար, անցած տարվա 26 կիլոգրամի փոխարեն։ Յոթնամյակի ընթացքում զգալիորեն կաճեն՝ ձկան որսը, բուսական յուղի և այլ սննդամթերքների արտադրությունը։

✪ Ժողովրդական սպառման առարկաների արտադրության ընդարձակումը և աշխատավորների գնողունակության բարձրացումը ՍՍՌՄ-ում ապահովում է ապրանքաշրջանառության սիստեմատիկ աճ։

Առաջիկա յոթնամյակում մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը կավելանա 57—62 տոկոսով։ Զգալիորեն կաճի անասնաբուծության մթերքների, մրգերի, կտորեղենի, հագուստի, կոշկեղենի վաճառքը բնակչությանը։ Շատ ավելի են վաճառվելու կուլտուր-կենցաղային և տնտեսական նշանակության ապրանքներ։ Մեծ զարգացում է ստանալու շինանյութերի առևտուրը։ Մեծ ուշադրություն է դարձվելու հասարակական սննդի զարգացմանը, այդ ձեռնարկությունների արտադրանքը ավելանալու է ավելի քան 2 անգամ։ Սննդամթերքների գները իջնելու են, լայն տարածում է ստանալու ճաշերի տուն տանելը։ Ընդարձակվելու է հասարակական սննդի ձեռնարկությունների, խանութների, կրպակների, կարի և կոշիկի ու հագուստի նորոգման արհեստանոցների, լվացքատների և բնակչության կենցաղային սպասարկման այլ ձեռնարկությունների ցանցը։



═══

## ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԹԵՄԱՆԵՐ ՍՄԿՊ XXI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը որպես կոմունիզմ կառուցողների համագումար։*

*ՍՍՌՄ-ում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը սովետական ժողովրդի մեծագույն նվաճումն է։*

*Ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային 15-ամյա պլանը ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման տնտեսական ծրագիրն է։*

*Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը և նրա հիմնական գծերը։*

*Յոթնամյա պլանը կոմունիստական շինարարության հոյակապ ծրագիրն է։*

*Յոթնամյակը վճռական քայլ է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում։*

*Կապիտալիզմի հետ սոցիալիզմի տնտեսական մրցության վճռական էտապը։*



*Պարտիայի XXI համագումարի նյութերը աչքի ընկնող ավանդ են մարքսիզմ-լենինիզմի գանձարանում։*

*XXI համագումարը սոցիալիզմը կոմունիզմի վերածելու օրինաչափությունների մասին։*

*Արտադրական հարաբերությունների հետագա կատարելագործումը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։*

*Սոցիալիստական սեփականության կոլտնտեսային-կոոպերատիվ և համաժողովրդական ձևերի զարգացման ու մերձեցման ուղիները։*

*Քաղաքի և գյուղի միջև, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացման պրոբլեմը։*

*Սովետական հասարակության զարգացման արդի էտապում նյութական ու հոգևոր բարիքների բաշխման պրոբլեմը։*

*XXI համագումարը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում հասարակության քաղաքական կազմակերպման մասին։*

*XXI համագումարը սոցիալիստական պետության զարգացման և ամրապնդման մասին։*

*Պարտիայի XXI համագումարը կոմունիստական հասարակական ինքնավարության*

ուղղությամբ սոցիալիստական պետականության աստիճանական զարգացման մասին։

XXI համագումարը կոմունիզմի բարձրագույն փուլին սոցիալիստական երկրների առավել կամ պակաս միաժամանակյա անցման հնարավորության մասին։

Նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքը և բաշխման նկատմամբ հավասարարական մոտեցման քննադատությունը։

Հասարակության բարօրության համար աշխատանքի բարոյական խթանների հարաճուն նշանակությունը սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում։

Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ղեկավար ու կազմակերպող ուժն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։

ՍՄԿՊ-ի գործունեության մեջ տեսության և պրակտիկայի միասնությունը ստեղծագործական մարքսիզմի կենդանի մարմնացումն է։

Պարտիայի գաղափարական աշխատանքի խնդիրները արդի էտապում։

Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը ՍՍՌՄ-ում։

Պլանավորման լենինյան սկզբունքները



ՍՍՌՄ կոմունիստական շինարարության պրակտիկայում։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի գլխավոր խնդիրները։

Առաջիկա յոթնամյակում արմատական պրոբլեմը՝ կապիտալիզմի հետ սոցիալիզմի խաղաղ տնտեսական մրցության մեջ առավելագույն չափով ժամանակ շահելու պրոբլեմն է։

Յոթնամյա պլանի հիմնական ուղղությունն է էկոնոմիկայի խաղաղ զարգացումը և սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման համար մղվող պայքարը։

Ծանր ինդուստրիայի և նրա վճռական ճյուղերի ավելի արագ զարգացումը յոթնամյակի տարիներին։

Գործող ձեռնարկությունների արմատական վերակառուցումը յոթնամյակի տարիներին՝ գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա։

Երկրի համատարած էլեկտրիֆիկացման մասին մեծ Լենինի գաղափարի իրականացման վճռական ստադիան։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը յոթնամյակի խնդիրների հաջող իրականացման վճռական պայմանն է։

Արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման գլխավոր պայմանն է։

Արտադրության հետագա մասնագիտացման ու կոոպերացման ուղիները ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։

Հացահատիկի արտադրության ըստ ամենայնի ավելացումը առաջիկա տարիներին հողագործության գլխավոր գիծն է։

Անասնաբուծական մթերքների ավելացման խնդիրները յոթնամյակի տարիներին։

Նոր շինարարության մեջ կապիտալ ներդրումները և ձեռնարկությունների վերակառուցումը սոցիալիստական ընդլայնված վերարտադրության արագ տեմպերի հիմքն է։

Արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխման պրոբլեմը յոթնամյա պլանում։

XXI համագումարը յոթնամյա պլանի գլխավոր խնդիրների լուծման համար նյութական և աշխատանքային ռեսուրսների խնայողության խստագույն ռեժիմի նշանակության մասին։

XXI համագումարը յոթնամյակի տարիներին աշխատավորների կենսամակարդակի բարձրացման ուղիների մասին։

1959 թվականի պլանի համար պայքարը յոթնամյակի հաջող կատարման ու գերա-



կատարման կարևորագույն նախադրյալն է։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը սովետական հասարակարգի զարգացման նոր էտապում պարտիայի կարևորագույն խնդիրն է։

Արտադրության հետ ուսման սերտ կապը երիտասարդությանը կոմունիզմի ոգով դաստիարակելու հիմնական պայմանն է։

Կոմունիստական հասարակարգի կառուցումը բազմամիլիոն ժողովրդական զանգվածների կենդանի ստեղծագործական գործունեությունն է։

Գիտության ու տեխնիկայի դերը ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության հոյակապ ծրագրի իրականացման գործում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի միջազգային նշանակությունը։

Յոթնամյա պլանի նշանակությունը համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրների հետագա համախմբման համար, XXI համագումարը հասարակության կյանքից համաշխարհային պատերազմը վերացնելու ռեալ հնարավորության մասին։

Սովետական Միության տնտեսական պոտենցիալի բարձրացումը կարևորագույն ավանդ է միջազգային անվտանգության ամրապնդման գործում։




Յոթնամյա պլանը Սովետական Միության լենինյան խաղաղասիրական քաղաքականության արտահայտությունն է։

Պետությունների խաղաղ գոյակցությունը ՍՍՌՄ արտաքին քաղաքականության գլխավոր գիծն է։

Համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման միասնության և միաձույլ համախմբվածության ցուցադրումը։

XXI համագումարը ռեակցիայի ու ֆաշիզմի դեմ մղվող պայքարում կոմունիստների և սոցիալիստների գործողությունների միասնությունն ամրապնդելու անհրաժեշտության մասին։

Կոմունիստական ու բանվորական պարտիաների եղբայրական ինտերնացիոնալ կապերի հետագա ամրապնդումը։

Բուրժուական գաղափարախոսության և ժամանակակից ռևիզիոնիզմի դեմ մղվող պայքարը մարքս-լենինյան պարտիաների կարևորագույն խնդիրն է։

Կոմունիստական ու բանվորական պարտիաների պայքարը դոգմատիզմի և աղանդավորականության դեմ։

Գերմանական հարցի լուծումը ժողովուրդների խաղաղության ու անվտանգու-



թյան ամրապնդման կարևորագույն պայմանն է։

Զինաթափման, ատոմային ու ջրածնային զենքն արգելելու պայքարը արդիականության արմատական պրոբլեմն է։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի միջազգային նշանակությունը։

Սովետական Հայաստանի հաջողությունները Սովետական իշխանության տարիներին արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։

Հայ ժողովրդի գիտության ու կուլտուրայի ծաղկումը։

Հայաստանի արդյունաբերության զարգացման խնդիրները յոթնամյակի տարիներին։

Հայաստանի գյուղատնտեսության զարգացման խնդիրները յոթնամյակի տարիներին։

Հայ ժողովրդի բարեկեցության աճը յոթնամյակի տարիներին։

Հայաստանի աշխատավորների պայքարը ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների կենսագործման համար։

---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

# СОДЕРЖАНИЕ



---


**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 5** **1959 г.**

*ՎՖ-02024* *Պատվեր 162* *Տիրաժ 9200*

---

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։